Պրոլետարնե… միացե

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# *Ագիտատորի*
# ԲԼՈԿՆՈՏ

№ 17 ՍԵՊՏԵՄԲԵՐ 1957

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ: Հեռախոս՝ 2—52—78:






# ԱՐՄԱՏԱՎՈՐԵ՛ՆՔ ԱՌԱՋԱՎՈՐ ՓՈՐՁԸ ԿՈԼՏՆՏԵՍԱՅԻ՛Ն ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱ՛Ն ՄԵՋ

*Աշխատանքի առաջավոր փորձը կոլտնտեսային արտադրության մեջ արմատավորելը կենսական նշանակություն ունի մեր երկրի համար:*

*Կատարելով Մեծ Հոկտեմբերի 40-ամյակի պատվին ստանձնած պարտավորությունները, սոցիալիստական մրցության տասնյակ հազարավոր առաջավորներ գործնականում ցույց են տվել և այժմ էլ ցույց են տալիս հողի բերքատվությունը և անասունների մթերատվությունը բարձրացնելու լավագույն օրինակներ: Մեր երկրի բազմահազար մեխանիզատորներից շատ-շատերը գյուղատնտեսական տեխնիկան լրիվ կարողությամբ և առավել բարձր արտադրողականությամբ օգտագործելու ընթացքում հասել են մեծ հաջողությունների: Այսպես, օրինակ, Հոկտեմբերյանի շրջանի Նորապատ գյուղի կոլտնտեսությունը, որն ամեն տարի նոր հաջողու-*



թյուն է ձեռք բերում կովերի կաթնատվությունը բարձրացնելու գործում։ Կոլտնտեսությունը 1954 թվականին ամեն մի կովից ստացել է 1.500 կիլոգրամ կաթ, 1955 թվականին՝ 2.236 կիլոգրամ, 1956 թվականին՝ 3.358 կիլոգրամ։ Այս տարվա 7 ամսում կոլտնտեսությունը յուրաքանչյուր հարյուր հեկտար հողատարածության դիմաց արտադրել է 427 ցենտներ կաթ։ Նախորդ տարիների համեմատությամբ մեծ չափերով ավելացել է նաև մսի արտադրությունը, վերացվել է անասունների ստերջությունը և անկումները։

Բասարգեչարի շրջանի Նորակերտ գյուղի «Կարմիր Հոկտեմբեր» կոլտնտեսությունը անցյալ տարի 1.000 հեկտար հացահատիկային կուլտուրաների յուրաքանչյուր հեկտարից ստացավ 17,5 ցենտներ միջին բերք, իսկ գարնանացան ցորենի ցանքերից՝ 24,3 ցենտներ։ Այս տարի կոլտնտեսությունը հացահատիկի ավելի առատ բերք կստանա։

Նույն կոլտնտեսության առանձին բրիգադներ հացահատիկի ամեն մի հեկտարից ստացել են մինչև 34 ցենտներ բերք։

Արտաշատի շրջանի Անաստասավանի կոլտնտեսությունն անցյալ տարի 241 հեկտար խաղողի այգիների յուրաքանչյուր հեկտարից ստացել է 145,3 ցենտներ բերք։ Նույն



կոլտնտեսության Մ. Աբրահամյանի բրիգադան 25 հեկտար խաղողի այգիների ամեն մի հեկտարից ստացել է 183 ցենտներ բերք, իսկ բամբակի ցանքերից՝ 37 ցենտներ։ Կոլտնտեսությունն անցյալ տարի 16 միլիոն ռուբլի եկամուտ է ունեցել։

Շահումյանի շրջանի 18-րդ պարտհամագումարի անվան կոլտնտեսությունն անցյալ տարի 100 հեկտար հողատարածության դիմաց ստացել է 862 ցենտներ կաթ և 92 ցենտներ միս, հողի յուրաքանչյուր հեկտարից՝ 9.014 ռուբլու եկամուտ։

Խոշոր հաջողություններ են ձեռք բերված նաև գյուղատնտեսական աշխատանքները մեքենայացնելու ուղղությամբ։ Մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում ցրտահերկի աշխատանքներն անցյալ տարի մեքենայացվեց 95,5 տոկոսով, գարնանացան հացահատիկի ցանքինը՝ 52,8 տոկոսով, աշնանացանինը՝ 66,3 տոկոսով և բերքահավաքինը՝ 62,8 տոկոսով։

Ձեռք բերելով գյուղատնտեսական տեխնիկան առավել արտադրողականությամբ օգտագործելու հմտություն, էջմիածնի № 1 և Շահումյանի շրջանի մեքենա-տրակտորային կայանների մեխանիզատորները մեծ չափերով բարձրացրել են իրենց սպասարկած

կոլտնտեսություններում մշակվող կուլտուրաների բերքատվությունը: Օրինակ, Էջմիածնի № 1 ՄՏ կայանի սպասարկած կոլտնտեսություններում անցյալ տարի բամբակի յուրաքանչյուր հեկտարից ստացվել է 27 ցենտներ միջին բերք, իսկ Շահումյանի շրջանի ՄՏ կայանի սպասարկած կոլտնտեսություններում անցյալ տարի յուրաքանչյուր կովից միջին հաշվով ստացվել է 2.761 կիլոգրամ կաթ:

Բասարգեչարի ՄՏ կայանի Ս. Գասպարյանի տրակտորային բրիգադան տրակտորային աշխատանքների պլանը կատարել է 110,2 տոկոսով, բարելավել է տրակտորների տեխնիկական խնամքը և ամբողջ աշխատանքի ընթացքում բրիգադայի բոլոր մեքենաները գտնվել են սարքին վիճակում: Մարտունու շրջանի ՄՏ կայանի տրակտորիստ Ս. Սուքիասյանը երկու անգամ երկարաձգել է տրակտորի միջնորոգման ժամկետը, տնտեսելով վերանորոգման համար հատկացված գումարը:

Բազմաթիվ են խելացի ու լավագույն աշխատանքի օրինակները կոլտնտեսություններում, սովխոզներում և մեքենա-տրակտորային կայաններում:



Մեր ագիտատորների խնդիրն է՝ գյուղատնտեսության աշխատողների լայն շրջանում հանգամանորեն պարզաբանել առաջավոր փորձը, կոլտնտեսականներին, մեխանիզատորներին կոնկրետ օրինակներով ցույց տալ, թե աշխատանքի առաջավորներն ինչպես և ինչ միջոցներով են հասել բարձր բերքատվության և բարձր մթերատվության:

Գյուղատնտեսության առաջավորների աշխատանքի փորձը սիստեմատիկաբար պրոպագանդելու և այն կոլտնտեսային ու սովխոզային արտադրության մեջ արմատավորելու գործում ագիտատորներին հարուստ նյութ է տալիս Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսը, ինչպես նաև մեր ռեսպուբլիկայի օրերս բացված գյուղատնտեսական ցուցահանդեսը: Մեր երկրում իրավամբ Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսը համարվում է համաժողովրդական համալսարան, առաջավոր փորձի հարուստ գանձարան: Ուստի խիստ անհրաժեշտ է խելացի ու մտածված կերպով օգտվել այդ գանձարանից: Հարկավոր է ցուցահանդեսի մասնակիցներին պարբերաբար զրույցներով հանդես բերել կոլտնտեսականների առջև: Թող նրանք պատմեն, ինչպես իրենց աշխատանքի փորձի, այնպես էլ ցու-

ցահանդեսում իրենց տեսածի ու սովորածի մասին։

Առաջավոր փորձը գյուղատնտեսության աշխատողների շրջանում ավելի լայնորեն տարածելու և արտադրության մեջ ժամանակին ու արդյունավետ կերպով արմատավորելու համար, չպետք է սահմանափակվել ագիտացիոն-մասսայական աշխատանքի առանձին ձևերով։ Առաջավոր փորձը պրոպագանդելու և մասսայականացնելու գործում պետք է օգտագործել ագիտացիոն աշխատանքի բոլոր ձևերն ու միջոցները՝ անհատական և խմբակային զրույցները, զեկուցումները, ցուցադրական նյութերը, թերթերի և ամսագրերի ընթերցանությունները, գյուղատնտեսական թեմաներով կինոնկարների կոլեկտիվ դիտումները և այլն։

Պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ գյուղատնտեսության բնագավառում աշխատող մեր ագիտատորները սիստեմատիկաբար կօգնեն կոլտնտեսականներին, մեքենա-տրակտորային կայանների և սովխոզների աշխատողներին առաջավոր փորձը և գիտության ու պրակտիկայի նվաճումները սիստեմատիկաբար ուսումնասիրելու, ընդհանրացնելու և այն արտադրության մեջ ներդնելու համար։

---

## ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԶՐՈՒՅՑԸ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ՄԱՍԻՆ

Վ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

Օրերս Երևանի ձեթ-օճառ կոմբինատի հիդրոգործարանի ագիտատոր Սերաֆիմա Սուքիասյանի հերթական զրույցը նվիրված էր աշխատանքի արտադրողականության բարձրացման ուղիները թեմային։

Հիդրոգործարանը կոմբինատի առաջավոր գործարանն է։ Այստեղ երկար ժամանակ է, ինչ կոլեկտիվն իր ձեռքին ամուր պահում է միջգործարանային փոխանցիկ դրոշը։ Սակայն կոլեկտիվը չի հանգստանում ձեռք բերած հաջողություններով, նրա ստեղծագործական միտքն ուղղված է արտադրության պրոցեսների հետագա կատարելագործման, թողարկվող արտադրանքի ինքնարժեքի իջեցման և աշխատանքի արտադրողականության անընդհատ բարձրացման հարցերին։ Ագի-

տատորը սկսելով իր զրույցն ունկնդիրներին պարզ և մատչելի լեզվով, գործարանի կոնկրետ փաստերի ու տվյալների հիման վրա, պարզաբանեց այն հնարավորությունները, որ կան գործարանում աշխատանքի արտադրողականության բարձրացման համար։

Աշխատանքի արտադրողականության բարձրացումը,— ասաց նա,— նշանակում է տվյալ նյութի արտադրության վրա ծախսվող բանվորական ժամանակի կրճատում, այսինքն՝ հնարավորություն ստեղծել նույն ժամանակամիջոցում արտադրելու ավելի շատ նյութական արժեքներ։ Կոմունիստական պարտիան խնդիր է դրել,— շարունակում է ագիտատորը,— մոտակա տարիներին լուծել տնտեսական կարևորագույն պրոբլեմ՝ մեկ շնչին ընկնող արտադրանքով հասնել և անցնել կապիտալիստական առաջավոր երկրներից, հատկապես ԱՄՆ-ից։ Այս պատմական խնդրի լուծումը մեծ չափով կախված է այն բանից, թե ինչպես է մեզ մոտ բարձրացվում աշխատանքի արտադրողականությունը։ Լենինը ժամանակին նշել է, որ աշխատանքի արտադրողականության բարձրացումը վերջին հաշվով ամենակարևորն է ու ամենագլխավորը նոր հասարակարգի հաղթանակն ապահովելու համար։



Ինչքան բարձր լինի աշխատանքի արտադրողականությունը, այնքան մեր երկիրը հարուստ կլինի, այնքան շուտ կբավարարվի սովետական ժողովրդի հարաճուն պահանջմունքները։

Այնուհետև ագիտատորը պարզաբանեց, որ աշխատանքի արտադրողականության բարձրացումը սերտորեն կապված է խնայողության ռեժիմի, նոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի արմատավորման, գործող սարքավորումների կատարելագործման, բանվորների հմտության, վարպետության և գործիմացության բարձրացման, ինչպես նաև աշխատանքային կարգապահության ամրապնդման հետ։

— Երբ մենք խոսում ենք աշխատանքի արտադրողականության բարձրացման մասին,— շարունակում է իր զրույցը ագիտատորը,— ապա այստեղ խոսք լինել չի կարող մանր և մեծ գործերի մասին։ Ամեն մի մանր գործ սկիզբն ու հիմքն է մեծ գործի, բարձր ցուցանիշի։ Որպեսզի ունկնդիրներին իր միտքն ավելի պարզ լինի, ագիտատորը բերում է այսպիսի մի օրինակ. անցած 7 ամսում մեր գործարանի յուրաքանչյուր բանվոր բարձրացնելով աշխատանքի արտադրողականությունը ամսեկան թողարկել է մոտ 5,5

հազար ռուբլու արտապլանային արտադրանք։ Թվում է, թե փոքր թիվ է, բայց գործարանի մասշտաբով 7 ամսում այն կազմում էր 2 միլիոն 133 հազար ռուբլի։ Այստեղից էլ հետևում է, որ մենք պետք է ավելի շատ խնայենք հումք և օժանդակ նյութեր, իջեցնենք արտադրանքի ինքնարժեքը և բարձրացնենք աշխատանքի արտադրողականությունը։ Մեր գործարանի օրինակը ցույց է տալիս, թե ինչպես և ինչ ուղիներով է հնարավոր հասնել աշխատանքի արտադրողականության բարձրացման։ Այսպես, հայտնի է, որ հունիս ամսին մենք զգալիորեն թերակատարեցինք համախառն արտադրանքի պլանը։

Ձեռնարկված մի շարք միջոցառումները հնարավորություն տվին ավելի կատարելագործելու, ինտենսիվացնելու աշխատանքը, բարձրացնելու յուրաքանչյուր բանվորի արտադրողականությունը։

Ընկ. Սուքիասյանը պատմում է այն միջոցառումների մասին, որոնց կենսագործումը հնարավորություն տվեց հուլիս ամսվա համախառն արտադրանքի պլանի կատարումը ապահովել 106,2 տոկոսով, բարձրացնելով բանվորի աշխատանքի արտադրողականությունը մոտ 8 տոկոսով, որը ամենաբարձրն է կոմբինատում։ Եթե առաջ յուղը դեպի սառ-



ցավորումներն էինք մղում 1 ժամում, ապա այժմ այդ նույն պրոցեսի վրա մենք կորցնում ենք ընդամենը 15 րոպե։

Մի շարք պրոցեսներ մինչև վերջերս էլ դեռ մեքենայացված չէին։ Այդ հանգամանքը խոչընդոտում էր աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։ Միայն վերջերս մեքենայացվեց հիմնական և օժանդակ նյութերի փոխադրումը, դա զգալիորեն կրճատեց այդ աշխատանքի վրա գործադրվող աշխատաժամի քանակը։

Բերելով կոնկրետ տվյալներ, ագիտատորը ունկնդիրների ուշադրությունը բևեռում է եղած սարքավորումների կատարելագործման վրա։ Աշխատանքի արտադրողականությունը սերտորեն կապված է այն բանի հետ, թե բանվորը ինչպես է տիրապետում տեխնիկային, որքանով է նա հասկանում տեխնիկայի «լեզուն» այն օգտագործում արդյունավետ ու լրիվ կարողությամբ։

Խոսելով նորարարության խոշոր նշանակության մասին, ընկ. Սուքիասյանը պատմում է զրույցին մասնակից Մ. Սարգսյանի խելացի առաջարկության մասին, որը զգալիորեն բարձրացրեց աշխատանքի արտադրողականությունը։

Բայց մենք դեռ քիչ նեղ տեղեր չունենք, ո-

*րոնք պահանջում են ստեղծագործական մտքի միջամտություն: Վերցնենք թեկուզ յուղերի տեսակները: Նրանք հաճախ խառնըվում են միմյանց հետ, անհրաժեշտ հարմարանքների բացակայության պատճառով: Այդ կապակցությամբ ագիտատորը մի շարք քըննադատական դիտողություններ է անում:*

*— Իսկ մեր վաննաները,— միջամտում է բանվորուհի Զ. Զարգարյանը,— նրանք կաթում են և միջոցներ ձեռնարկող չկա:*

*Միանգամայն ճիշտ դիտողություն.— նկատում է ագիտատորը,— որոշված է և շուտով կսկսեն վաննաների վերանորոգումները:*

*Աստիճանաբար ագիտատորի զրույցը վեր է ածվում ազատ ու անկաշկանդ մտքերի փոխանակության, որի ընթացքում բանվորները, բանվորուհիները իրենց դիտողություններն ու առաջարկություններն են անում:*

*Խոսելով աշխատանքի ճիշտ կազմակերպման, օժանդակ նյութերի խնայողության մասին, ունկնդիր Ա. Վարդանյանը քննադատական դիտողություն է անում, որ գործարանի բակում կուտակված է մեծ քանակությամբ արտադրության մնացորդ, որը չի օգտագործվում:*

*Ագիտատոր Սուքիասյանը պարզաբանում է այդ և շատ ուրիշ հարցեր:*

---

## ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ՓՈՐՁԻՑ

# ԻՆՉՊԵՍ ՍՏԱՑԱՆՔ ԽԱՂՈՂԻ ԲԱՐՁՐ ԲԵՐՔ

**Արտաշատի շրջանի Քաղցրաշեն գյուղի կոլտնտեսության ագրոնոմ ընկ. Ս. Խաչատրյանի պատմածը.**

*Խաղողի այգիների, բամբակենու, ինչպես նաև մյուս կուլտուրաների բերքատվությունը բարձրացնելու ասպարեզում մեր կոլտնտեսությունը աչքի ընկնող հաջողությունների է հասել: Անցյալ տարի մենք յուրաքանչյուր հեկտարից ստացանք 166 ցենտներ խաղող, 25,1 ցենտներ բամբակ, ավելի քան 200 ցենտներ բանջարեղեն: Մասնավորապես խաղողի այգիներից այդպիսի բարձր բերք աճեցնելու համար մեր կոլտնտեսությունը և մի շարք առաջավորներ հաստատվեցին Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի, ինչպես նաև Ռեսպուբլիկական գյուղատնտեսական ցուցահանդեսի մասնակիցներ և պարգևատրվեցին Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի պատվոգրով:*

Այս տարի մեր կոլտնտեսության առանձին բրիգադաներ խաղողի, բամբակի և բանջարեղենի ավելի բարձր բերք ստացան։ Օրինակ, Մանուկ Վարդանյանի ղեկավարած բրիգադան անցյալ տարի յուրաքանչյուր հեկտարից ստացավ 210 ցենտներ խաղող, իսկ Ս. Սարգսյանի, Ն. Սուսանյանի և Ն. Եղիազարյանի ղեկավարած օղակները՝ մինչև 250 ցենտներ։

Մեր կոլտնտեսությունն ունի 106 հեկտար խաղողի այգի, որից բերքատուն՝ 80 հեկտար։ Բայց այդ 80 հեկտարից մենք ավելի շատ խաղող ենք ստանում, քան մեր շրջանի առանձին կոլտնտեսություններ ստանում են 200 հեկտար տարածությունից։

Ի՞նչպես ենք մենք կատարում խաղողի այգիների մշակությունը, ագրոտեխնիկական ինչպիսի միջոցառումներ ենք կիրառում։

Ինչպես հայտնի է, գարնանը այգիներում աշխատանքն սկսվում է այգեբացով։ Այստեղ կարևոր են ժամանակի ճիշտ ընտրությունը, այդ պրոցեսը խնամքով, բարձր որակով կատարելը։ Այգեբացը պետք է ավարտել մինչև հողի մեջ տաքության բարձրանալը, ուշացնելու դեպքում՝ մատերը տաք հողի մեջ մնալով կսկսեն փթել։ Այնուհետև վազերը բացում ենք մեծ խնամքով, փայտե թիերով, հոգ տա-



նում, որ բացելու ժամանակ մատերի աչքերը չփշրանան։ Բացի դրանից, մենք ձգտում ենք այգեբացն ավարտել որքան հնարավոր է շուտ։ Անցյալ տարի մենք այդ աշխատանքներն ավարտեցինք 5 օրվա ընթացքում։

Խաղողի այգիների բարձր բերքատվության ապահովումը շատ բանով կապված է էտը ճիշտ կատարելուց։ Դա շատ պատասխանատու աշխատանք է այգում՝ ոչ միայն տվյալ տարվա, այլև հաջորդ տարիների բարձր բերքատվությունն ապահովելու տեսակետից։ Որտեղի՞ց էտել մատը, քանի՞ աչք թողնել նրա վրա։ Այդ հարցերը ճիշտ են լուծում միայն հմուտ այգեգործները։ Եվ այդպիսիք մենք ունենք այգեգործական յուրաքանչյուր բրիգադայում։ Ահա նրանցից մի քանիսը. Արշակ Մարկոսյանը՝ առաջին բրիգադայում, Կարո Մանուկյանը՝ երկրորդ բրիգադայում, Միսակ Մանուկյանը և Մկրտիչ Ազիզյանը՝ չորրորդ բրիգադայում, Հովհաննես Իսաջյանը՝ հինգերորդ բրիգադայում և ուրիշներ, մարդիկ, որոնք հիանալի գիտեն, թե որ վազի հետ ինչպես պետք է վարվել, որի վրա քանի աչք է հարկավոր թողնել։

Մենք հոգ ենք տանում, որ էտը ավարտվի մինչև ապրիլի 5—6-ը, այսինքն մինչև բողբոջների բացվելը։ Հաշվի առնելով տվյալ

հողամասի բերրիությունը, վազի կարողությունը և սորտը, մեր այգեգործները յուրաքանչյուր վազի վրա թողնում են 60—70 աչք, ըստ որում սպիտակ սորտերի վազերի յուրաքանչյուր մատի վրա թողնվում է միջին հաշվով 7 աչք, կախեթի սորտինը՝ 4 աչք։

Առանձին կոլտնտեսություններում պատահում է, երբ էտը կատարում են հյութաշարժումն սկսվելուց հետո, կամ երբ վազն արդեն երկար շվեր է արձակած լինում։ Այդպիսի դրություն չպետք է թույլ տրվի։

1956 թվականին մենք խստորեն պահպանեցինք այգիների մշակության բոլոր ժամկետները, այդ թվում նաև էտի ժամկետը։

Այգեփորը մենք սկսում ենք էտին զուգընթաց։ Աշխատանքը կազմակերպում ենք այնպես, որ այդ պրոցեսը նույնպես ավարտվի ժամանակին, որպեսզի հողում մոլախոտեր չաճեն և սննդանյութեր չխլեն վազից։ Այգեփորը անցյալ տարի մենք ավարտեցինք 25 աշխատանքային օրում, ապրիլի 20-ին, իսկ այս տարի ավելի շուտ՝ 20 աշխատանքային օրում և բարձր որակով։ Հատուկ ուշադրություն դարձվեց վարի որակի վրա, փորեցինք անխտիր բոլոր այգիները, ոչ պակաս քան 20 սմ. խորությամբ։

Ծաղկելուց առաջ, մայիսի 15-ից մինչև





20-ը, այգիներին սնուցում տվինք։ Տարիների փորձից ելնելով մենք հեկտարին տվեցինք 400 կգ. ամոնիակային սելիտրա, 700 կգ. սուպերֆոսֆատ և 200 կգ. կալիական աղ։ Սելիտրան նպաստում է վազի աճեցողությանը, բողբոջների լավ կազմակերպմանը (որը խիստ կարևոր է հաջորդ տարվա բարձր բերքն ապահովելու համար), սուպերֆոսֆատը նպաստում է բերքի ավելացմանը, իսկ կալիական աղը, բերքն ավելացնելուն զուգընթաց, բարձրացնում է նրա որակը՝ քաղցրությունը (շաքարայնությունը)։

Այգիների որոշ տարածություններ պարարտացնում ենք նաև տեղական պարարտանյութերով, հեկտարին 30 տոննայի հաշվով։

Խաղողի այգիների բերքատվության բարձրացման համար կարևոր միջոցառում է հանդիսանում նաև կանաչահատումը, վազի բնի հոռաշվերի հեռացումը։ Կանաչահատում չկատարելու դեպքում հոռաշվերը խլում են վազի սնունդը, դրա հետևանքով նվազում է բերքը, ողկույզները պակաս ու մանր են լինում։ Նկատի ունենալով այդ, մենք կանաչահատումը կատարում ենք բոլոր այգիներում։

Խիստ կարևոր է նաև ոռոգման ճիշտ ռեժիմի կիրառումը։ Մենք այգիները ջրում ենք

հաշվի առնելով յուրաքանչյուր այգու վազերի պահանջը։ Այսպես, օրինակ, առանձին այգիներ, որոնք ունեն ավազային հողեր, մենք ջրում ենք 6—7 անգամ, իսկ մնացած այգիները՝ հիմնականում չորս անգամ։

Այստեղ չի կարելի մի դիտողություն չանել. ուսումնասիրել առաջավորների փորձը չի նշանակում պատճենավորել տվյալ տնտեսությունում կիրառվող բոլոր ագրոտեխնիկական միջոցառումները։ Հմուտ այգեգործներն իրավացի կերպով խորհուրդ են տալիս այսպիսի դեպքերում ցուցաբերել ստեղծագործական վերաբերմունք, այսինքն առաջավոր տնտեսության փորձն արմատավորելիս հաշվի առնել իր տնտեսության հողակլիմայական պայմանները։ Այսպիսի խորհուրդ տվեցինք մենք մեր մրցակից Ուկրաինական ՍՍՌ Խերսոնի մարզի Վիսոկոպոլյեի շրջանի կոլտնտեսականներին, երբ վերջերս նրանք մեզ մոտ էին եկել և հետաքրքրվում էին մեր այգեգործների աշխատանքի փորձով։

Պետք է ասեմ, որ երկրի առաջավոր այգեգործական տնտեսությունների աշխատանքի փորձն ուսումնասիրելու ժամանակ մենք նույնպես այդպիսի ակտիվ վերաբերմունք ենք ունեցել։

Մի քանի խոսք այգիների բուժման մասին։



Ամեն տարի մենք միլդիու հիվանդության դեմ չորս անգամ բուժում ենք կատարում բորդոյան հեղուկով։ Առաջին բուժումը ավարտում ենք մինչև մայիսի 10-ը, երբ վազի շվերի վրա երևում են 4—5 տերև, հաջորդ բուժումները՝ 7—10 օրը մի անգամ։ Այս տարի վերջին բուժումն ավարտեցինք հունիսի 30-ին։

Օիդիում հիվանդության դեմ 2—3 անգամ ծծմբով փոշոտում կատարեցինք։ Առաջինը՝ ծաղկումից անմիջապես հետո, հաջորդը՝ հունիսի 25—30-ին։ Երրորդ փոշոտումը կատարեցինք որոշ այգիներում հուլիսի 20—21-ին։ Ողկույզակերների դեմ անցյալ տարի միայն մեկ անգամ կատարեցինք փոշոտում, նույնպես ծաղկման շրջանում, մայիսի 20—25-ին։

Կիրառած այդ ագրոտեխնիկական միջոցառումները հիանալի արդյունք տվեցին. մեր բոլոր այգիներում սպասածից լավ բերք աճեց։ Եվ մեր այգեգործների առջև ծառացավ վերջին կարևորագույն խնդիրը՝ աճեցված առատ բերքն հավաքել սեղմ ժամկետում, կանխել կորուստները։ Մենք չէինք կարող հաշվի չառնել մեր շրջանի որոշ կոլտնտեսությունների նախորդ տարիների փորձը, երբ բերքահավաքի աշխատանքները ձգձգելու

պատճառով զգալի քանակությամբ խաղող թողնվում էր ձյան տակ։ Խաղողի բերքահավաքին մենք ձեռնամուխ եղանք կազմակերպված. պատրաստել էինք զգալի քանակությամբ տարա, անհրաժեշտ գործիքներ, մշակված էր բերքահավաքի պլան։ Կոլտնտեսականների կազմակերպված աշխատանքի շնորհիվ աճեցված բերքն հավաքվեց 25 աշխատանքային օրում, այն ավարտվեց հոկտեմբերի 20-ին։

Պետք է խոստովանեմ, որ անցյալ տարի մեր այգեգործների աշխատանքներում նաև թերություններ նկատվեցին։ Այս տարի գարնանը, սոցիալիստական մրցության մեջ մտնելով Ուկրաինական ՍՍՌ Խերսոնի մարզի Խրուշչովի անվան կոլտնտեսության, ինչպես նաև մեր հարևան Նորաշեն գյուղի կոլտնտեսության հետ, մենք բացահայտեցինք կոլտնտեսության այգեգործների աշխատանքներում նկատված թերությունները, հայտնաբերեցինք խաղողի այգիների բերքատվությունը բարձրացնելու նոր ռեզերվներ։

Ի՞նչ ռեզերվներ են դրանք։

Ինչպես հայտնի է, լիարժեք կարելի է համարել այն այգիները, որտեղ հեկտարում կա 2.600—2.700 վազ։ Բայց մեր այգիների



մի զգալի տարածությունների վրա հեկտարում կար 1.800—2.000 վազ։ Միանգամայն հասկանալի է, որ այդ ոչ լիարժեք այգիներից մենք 25—30 տոկոսով պակաս բերք էինք ստանում։ Եվ ահա այս տարվա գարնանը մենք լուրջ աշխատանք կատարեցինք այգիները լիարժեք դարձնելու ուղղությամբ։ Բոլոր բրիգադիրներին առաջադրանքներ տրվեցին անդալիս կատարելու միջոցով վերացնելու իրենց այգիներում նկատված բաց տեղերը։ Կոլտնտեսության նախագահ, ագրոնոմ ընկ. Ա. Գրիգորյանի հետ միասին ուշի-ուշով հետևում էինք, որ այդ առաջադրանքները կատարվեն ճշտորեն։ Եվ պետք է ասել, որ յուրաքանչյուր բրիգադայում մոտ 2.000-ական անդալիս արվեց։ Բացի դրանից, առաջիկայում ևս այգիների լիարժեքությունն ապահովելու նպատակով կոլտնտեսությունը մեկ հեկտար տարածության վրա տնկարան է հիմնել, որտեղ աճեցնում ենք մոտ 80 հազար արմատակալներ։

Այգիների լիարժեքությունն ապահովելու ուղղությամբ ձեռք առնված այդ միջոցառումները լրիվին կիրառելուց հետո մեր այգիների բերքատվությունը կավելանա մինչև 30 տոկոսով։

Հենց այդ ռեզերվները հաշվի առնելով,

մեր այգեգործները պարտավորվել են այս տարի խաղողի այգիների յուրաքանչյուր մեկ հեկտարի բերքատվությունը հասցնել միջին հաշվով 200 ցենտների։ Ավելին. առաջավոր օղակավարներ Ա. Եղիազարյանը, Ն. Սուսանյանը և ուրիշներ պարտավորվել և պայքարում են հեկտարից 250—260 ցենտներ խաղողի բերք ստանալու համար։

Մեր խաղողի բերքն արդեն հասնում է, կարելի է ասել, որ այն արդեն հասել է։ Եվ պետք է ասեմ, որ Քաղցրաշենի այգեգործների գործադրած ջանքերը իզուր չեն անցել։ Բոլոր տվյալները կան այն մասին, որ մեր կոլտնտեսականները ճշտորեն կկատարեն իրենց ստանձնած պարտավորությունները, և անցյալ տարվանից ավելի բարձր բերք կհավաքեն, ավելի շատ խաղող կհանձնեն հարազատ պետությանը։

Դա կլինի մեր լավագույն նվերը Մեծ Հոկտեմբերի 40-ամյակին։

---

ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ՋՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ

---

## ԴԵՊԻ ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 40-ԱՄՅԱԿԸ

(Թվեր ու փաստեր)

Մեր ռեսպուբլիկայի աշխատավորությունը օրըստօրէ՛լ ավելի է լարում իր ողջ ուժերը՝ համաժողովրդական մեծ տոնը՝ Հոկտեմբերյան ռևոլյուցիայի 40-ամյակը արտադրական նոր հաջողություններով դիմավորելու համար։

Ահա թվեր ու փաստեր, որոնք ցույց են տալիս մեր աշխատավորության ձեռք բերած արտադրական լուրջ հաջողությունները մեծ տոնի նախօրյակին։

✪ Արդյունաբերության համախառն արտադրանքի արտադրության 1957 թվականի առաջին կիսամյակի պլանը ռեսպուբլիկայում կատարվել է 103 տոկոսով։ Ամբողջ ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալը 1957 թվականի առաջին կիսամյակում 1956 թվականի նույն ժամանակամիջոցի համեմատությամբ աճել է 11 տոկոսով։

✪ Արդյունաբերական արտադրանքի մի քանի կարևորագույն տեսակների արտադրության առաջին կիսամյա պլանը կատարվել է հետևյալ կերպ. էլեկտրաէներգիա՝ 104 տոկոսով, կաուստիկ սոդա՝ 101 տոկոսով, ավտոդողեր՝ 104 տոկոսով, մետաքսյա կտորեղեն՝ 105 տոկոսով, շաքարավազ՝ 133 տոկոսով, կենդանական յուղ՝ 129 տոկոսով, պանիր՝ 132 տոկոսով և այլն։

✪ Աշխատանքի արտադրողականությունը ամբողջ ռեսպուբլիկայում 1957 թվականի առաջին կիսամյակում անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ ավելացել է 4 տոկոսով։

✪ Արտադրական մեծ հաջողությունների է հասել Լենինականի շոգեքարշային դեպոյի կոլեկտիվը։ Պարտիայի XX համագումարի անվան շոգեքարշային շարասյունը, որին գլխավորում է հրահանգիչ-մեքենավար, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Ա. Խաչատրյանը, միայն այս տարվա առաջին կիսամյակում տնտեսել է 90 տոննա պայմանական վառելանյութ։ Շարասյան մեքենավարները այդ ժամանակամիջոցում պլանից ավելի փոխադրել են 160 հազար տոննա բեռ։ Մեծ չափով ավելացել է շոգեքարշերի վազքը։ Մեքենավար Ս. Վաղիգեղցյանը իր



շոգեքարշի վազքը պլանով սահմանված 80 հազար կիլոմետրի փոխարեն հասցրել է 136 հազար կիլոմետրի։

✪ Հոկտեմբերյանի կաթի գործարանը ժամկետից 5 ամիս շուտ կատարեց տարեկան պլանը։ Գործարանը 2 միլիոն 50 հազար ռուբլու փոխարեն երկրին տվել է 2 միլիոն 127 հազար ռուբլու արտադրանք և տարեկան արտադրական պլանը կատարել է 103,7 տոկոսով։ Գործարանում միաժամանակ բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը 2 տոկոսով և իջել արտադրանքի ինքնարժեքը 7,7 տոկոսով։ Տնտեսված են մեծ քանակությամբ էլեկտրաէներգիա և օժանդակ նյութեր։

✪ Վերջերս Երևան քաղաքում շահագործման հանձնվեց գործիքաշինական նոր գործարան։ Գործարանը սկսել է արտադրել պիրոմետրիկ (ջերմաչափական) գործիքներ, որոնք քիմիական, մետալուրգիական, էներգետիկ և արդյունաբերության մյուս բնագավառներում օգտագործվում են ջերմության չափելու համար։ Գործարանն իր առաջին արտադրանքն ուղարկել է Նովոսիբիրսկի տուրբոգեներատորային գործարան, Բրատսկի հիդրոէլեկտրակայան, Խար-

կովի էլեկտրամեքենաշինական գործարան և այլուր։

✪ Այս տարվա առաջին կիսամյակում շահագործման են հանձնվել նաև Արգնու հիդրոէլեկտրակայանի 3-րդ ագրեգատը՝ 22 հազար կիլովատ հզորությամբ, Երևանի Շամպայն գինիների գործարանի գլխավոր կորպուսը. ընդլայնվել են էլեկտրասարքավորումների գործարանի, Ձերժինսկու անվան մեքենաշինական գործարանի և Հայէլեկտրոգործարանի կարողությունները։

✪ 1957 թվականի առաջին կիսամյակում 1956 թվականի նույն ժամանակամիջոցի համեմատությամբ ռեսպուբլիկայում զգալի չափով ավելացել է խոշոր և մանր եղջերավոր անասունների գլխաքանակը։ Կաթնատվությունը, ընդհանուր առմամբ, ավելացել է 15 տոկոսով։ Այս տարվա առաջին կիսամյակում պետությանը մթերել և գնել է 21 տոկոսով ավելի կաթ և 9 տոկոսով ավելի բուրդ, քան նախորդ տարվա նույն ժամանակամիջոցում։

✪ Մտնելով սոցիալիստական մրցության մեջ, ի պատիվ Մեծ Հոկտեմբերի 40-ամյակի, ռեսպուբլիկայի շատ շրջանների կոլտնտեսություններ աչքի ընկնող հաջողությունների են հասել կաթի արտադրության



ավելացման ուղղությամբ։ Կաթի մթերման և գնման տարեկան պլանը ժամկետից շուտ կատարել են. Արտաշատի շրջանը՝ 107 տոկոսով, Սպիտակի շրջանը՝ 103,5 տոկոսով, Կրասնոսելսկի շրջանը՝ 101,6 տոկոսով, Ալինի շրջանը՝ 100 տոկոսով և այլն։

✪ Հոկտեմբերյան ռևոլյուցիայի 40-ամյակը արտադրական բարձր ցուցանիշներով է դիմավորում Հայկական ՍՍՌ Ջրային տնտեսության մինիստրության Ստալինի անվան ջրանցքի ջրոողման սիստեմի վարչության կոլեկտիվը։ Արտաշատի, Վեդու և Շահումյանի շրջանները ոռոգելի ջրով ապահովելու, միջտնտեսական ոռոգելի ջրանցքների օգտակար գործողության բարձր գործակից ունենալու համար այդ կոլեկտիվին է հանձնվել ՍՍՌՄ Գյուղատնտեսության մինիստրության և ՀԱՄԿԽ-ի փոխանցիկ Կարմիր դրոշը և տրվել է դրամական առաջին մրցանակ։

✪ Կիրովական քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունները ծավալելով նախատոնական սոցիալիստական մրցությունը, ժամկետից շուտ կատարեցին այս տարվա առաջին կիսամյակի պլանը։

Մրցության մեջ հատկապես լավ արդյունքների հասավ Ալ. Մյասնիկյանի ան-

վան քիմիական կոմբինատը, որը պլանից ավելի թողարկել է մեծ քանակությամբ ամյանային սելիտրա և ցիանամիդ։

Արտապլանային արտադրանք են տալիս նաև Կամոյի անվան տրիկոտաժի, մորթու-մուշտակի և կարի ֆաբրիկաների ու մեքենաշինական գործարանի կոլեկտիվները։

✪ Երևանի ժամացույցի գործարանի արտադրանքը արդեն լայն ճանաչում է գտել ոչ միայն մեր ռեսպուբլիկայում, այլև նրա սահմաններից դուրս։ Այս օրերին գործարանի կոլեկտիվը աշխատում է մեկ ձգտումամբ՝ համաժողովրդական տոնը դիմավորել արտադրական նորանոր հաջողություններով։ Լավ են աշխատում հատկապես ավտոմատների ու գործիքային ցեխերը։ Գործիքային ցեխը այս տարվա առաջին յոթ ամիսների պլանը կատարել է 166.5 տոկոսով։ Երևանի հեռախոսային կայանի համար ցեխը պատրաստում է նոր «խոսող» ժամացույց։ Այդ ժամացույցը պատրաստ կլինի մեծ տոնի նախօրյակին։

✪ Մեծ Հոկտեմբերի 40-ամյակը արտադրական լուրջ հաջողություններով են դիմավորում նաև Հայկական ՍՍՌ Կապի մինիստրության ցանցի աշխատողները։ 1957 թվականի երկրորդ եռամսյակում Հայաս-



տանի կապավորները ապահովեցին պլանի կատարումը եկամուտների գծով՝ 103,6 տոկոսով, մամուլի տարածման գծով՝ 106,4 տոկոսով։

Այդ ժամանակամիջոցում նրանք շահագործման հանձնեցին Երևանի ռադիոյի տունը, որն ունի բարձր ակուստիկ ցուցանիշներով ռադիոստուդիա և այլ կարևորագույն հարմարանքներ, ինչպես նաև երկու ավտոմատ հեռախոսային կայաններ Ջերմուկ կուրորտում և Գորիսի շրջկենտրոնում։ Այդ հաջողությունների համար ՍՍՌՄ Կապի մինիստրության կոլեգիան և կապի աշխատողների պրոֆմիության Կենտկոմի Նախագահությունը որոշեցին Համամիութենական երկրորդ մրցանակը շնորհել Հայկական ՍՍՌ կապի աշխատողների կոլեկտիվին։

---

ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՑՈՒՑԱՀԱՆԴԵՍՈՒՄ

---

# ՀԵԿՏԱՐԻՑ 951 ՑԵՆՏՆԵՐ ԿԱՐՏՈՖԻԼ

(Սիրող փորձարար Գրիգորի Ֆեոդորովիչ Շանաուրինի պատմածը)

*Երկար տարիներ է, որ ես զբաղվում եմ կարտոֆիլաբուծությամբ։ Վերջին երեք տարում, կենսաթոշակի անցնելուց հետո, ես մշակում եմ տարվա ընթացքում կարտոֆիլի երեք բերք ստանալու եղանակը՝ երեք անգամ տնկելով։ Փորձերս կատարում եմ ՌՍՖՍՌ կարտոֆիլաբուծության գիտա-հետազոտական ինստիտուտի կողմից Մերձմոսկովյան շրջանում ինձ տրամադրված 250 քառ. մետր հողամասում։ 1954 թվականին հողամասի կարտոֆիլի բերքը, հեկտարի հաշվով, կազմեց 500 ցենտներ, 1955 թվականին՝ 888, իսկ 1956 թվականին՝ 951 ցենտներ։*

*Միևնույն հողամասից տարեկան երեք բերք ստանալու համար ես օգտագործում*



*եմ «Պրիեկուլսկի ռաննիյ», «Ռաննայա ռոզա», «Վարբաև էպրոն» վաղահաս սորտերը։*

*Սերմացուի համար պալարները ջոկում եմ առողջ, բարձր բերքատու բույսերի պալարներից, որոնք իրենց ձևով և գույնով տիպիկ են տվյալ սորտի համար։*

*Սերմացու պալարների քաշը տատանվում է 80-ից մինչև 120 գրամի սահմաններում։ Ձմռան ընթացքում պալարները պահում եմ նկուղում՝ 1—3 աստիճան ջերմության պայմաններում։*

*Գարնանը, մարտի 15-ից ոչ ուշ, առողջ, ձմռան ընթացքում լավ պահպանված պալարները լցնում եմ զամբյուղների կամ արկղների մեջ և տեղափոխում 10—12 աստիճան ջերմություն ունեցող շենք։ Հենց որ պալարների վրա ծիլեր են սկսում երևալ (դա սովորաբար լինում է մեկ և կես-երկու շաբաթ հետո), դրանք յարովացման համար տեղափոխում եմ լուսավոր, 13—16 աստիճան ջերմություն ունեցող շենք, որտեղ փռում եմ սեղանների վրա՝ մեկ տակ։ Որպեսզի ծիլերը հավասարաչափ լուսավորվեն՝ պալարները հաճախ շուռ եմ տալիս։ Ապրիլի վերջերին պալարները լավ զարգացած, ամուր և փնջավորված ծիլեր են ունենում։*

Այդպիսի վիճակում դրանք պատրաստ են տնկելու։

Երկրորդ տնկման համար պալարները յարովացման են դնում սովորաբար հունիսի սկզբներին, իսկ երրորդ տնկման համար՝ հունիսի 20—25-ին։

Վաղ գարնանը հողամասը, որտեղ կարտոֆիլ պետք է ցանվի, փորում են 20—25 սանտիմետր խորությամբ։ Փորելիս հողամասը պարարտացնում են հանքային պարարտանյութերով, մեկ հարյուրերորդական հեկտարին օգտագործելով 4 կգ. սուլֆատ ամոնիում կամ 2 կգ. ամյակային սելիտրա. 4 կգ. սուպերֆոսֆատ, 4 կգ. կալիական աղ։ Բացի դրանից, կարտոֆիլի տնկման ժամանակ յուրաքանչյուր փոսիկի մեջ լցնում են 300—400 գրամ տորֆագոմաղբային կոմպոստ։

Տնկման առաջին ժամկետը մայիսի 5-ն է։ Կարտոֆիլը տնկում են քառակուսի եղանակով՝ 60.60 սմ., յուրաքանչյուր բնում տնկելով մեկ պալար՝ 3—4 սմ. խորությամբ։

Տնկման երկրորդ ժամկետը հունիսի 22—27-ն է։ Կարտոֆիլը տնկում են առաջին ժամկետի ընթացքում տնկված կարտոֆիլի միջշարքերում՝ 5—6 սմ. խորությամբ։

Տնկման երրորդ ժամկետը՝ առաջին ժամ-



կետում տնկված կարտոֆիլի բերքահավաքից հետո։ Կարտոֆիլը տնկում են երկրորդ ժամկետի ընթացքում տնկված կարտոֆիլի միջշարքերում՝ 5—6 սմ. խորությամբ։

Կարտոֆիլը տնկում են բահով, առանց կիսելու և այնպես, որ ծիլերը անպայման վերևի կողմում լինեն։

Տնկելուց հետո հողամասը թեթևակի փոցխում են։ Երեսանց տնկելու դեպքում՝ կարտոֆիլի ծիլերը շուտ են գետնի երես գալիս։

Երբ սառնամանիք է սպասվում, պետք է բուկլից անել։ Այդ եղանակը բարձրացնում է կարտոֆիլի բերքատվությունը, բայց փոքրինչ կասեցնում է վաղ պալարագոյացումը։ Ուստի ավելի լավ է ծիլերը ցրտից պաշտպանելու համար ստեղծել ծխածածկոց, այրելով հողամասի շուրջը կույտերով դրված աղբը կամ գոմաղբը։ Եթե շատ ուժեղ սառնամանիքներ է սպասվում (ավելի քան երեք աստիճան ցուրտ), անհրաժեշտ է ծիլերը ծածկել հողով։

Կարտոֆիլի հողամասը հարկավոր է միշտ պահել փուխր և մոլախոտերից զերծ վիճակում։ Դրա համար յուրաքանչյուր անգամ անձրևից հետո փխրեցնում են միջշարքային տարածությունները և բույսերի շուրջը։

Երբ բույսերը հասնում են 20—25 սմ. բարձրության, բուկլից եմ անում։

Առաջին ժամկետում տնկված բույսերի միջշարքային մշակությունը սովորաբար ավարտվում է մինչև հունիսի 15-ը։

Առաջին ժամկետում տնկված կարտոֆիլի բերքահավաքը կատարում եմ հուլիսի առաջին կեսին։

Երրորդ ժամկետում տնկված կարտոֆիլի բերքը և որակը զգալի չափով կախված են եղանակի պայմաններից՝ մթնոլորտային տեղումներից, մանավանդ տնկելու պահին, աշնանային սառնամանիքներից և այլն։

1956 թվականին կարտոֆիլաբուծության ասպարեզում ձեռք բերված արդյունքները երևում են հետևյալ աղյուսակից։

Աղյուսակ № 1

| Տնկման ժամանակը | Բերքահավաքի ժամանակը | Ստացված բերքը հեկտարի հաշվով՝ ցենտներով |
|---|---|---|
| Մայիսի 5 | Հուլիսի 10 | 376 |
| Հունիսի 20—25 | Օգոստոսի 28 | 317 |
| Հուլիսի 5—20 | Սեպտեմբերի 27 | 258 |
| Ընդամենը երեք բերքից | | 951 |



Լամպապույն սորտեր դուրս եկան «Թրինկոլսկի ռաննիյ»-ը և Վարբան։ Առաջին սորտի բերքը երեք տնկումներից, հեկտարի հաշվով, կազմեց 958, իսկ երկրորդ սորտինը՝ 1.050 ցենտներ։

Ես փորձեր դրեցի նաև երկու ժամկետում կարտոֆիլ տնկելու ուղղությամբ, երկրորդ ժամկետում տնկելու համար օգտագործելով Լորխ, Սևերնայա ռոզա և Բեռլինհինգեն սորտերը։

Կարտոֆիլի այնպիսի սորտեր տնկելիս, որոնց վեգետացիոն շրջանը երկար է, ես փոխեցի բույսերի սնման տարածությունը։ Լորխ, Բեռլինհինգեն և Սևերնայա ռոզա սորտերի կարտոֆիլի յարովացված պալարները ես տնկեցի հունիսի 22-ին, բայց առաջին ժամկետի ընթացքում տնկված կարտոֆիլի ոչ թե յուրաքանչյուր միջնաշարքում, այլ մեջընդմեջ, այսինքն՝ 120.60 սմ.։ Տրնկելիս ցանքերը ջրեցի։ Մնացած բաներում ագրոտեխնիկան նույնն էր, ինչ որ տնկման երրորդ ժամկետի դեպքում։ Ստացվեցին հետևյալ արդյունքները։

Աղյուսակ №2

| Սորտը | Տնկման ժամանակը | Բերքահավաքի ժամանակը | Ստացված բերքը հեկտարի հաշվ.՝ ցենտներ-ով |
|---|---|---|---|
| Էպրոն | Մայիսի 5 | Հունիսի 10 | 278 |
| Պրիեկուլսկի ռաննիյ | Մայիս | Հունիս | 347 |
| Միջին բերքը | — | — | 212,5 |
| Բեռլինհինգեն | Հունիս 22 | Սեպտեմբ. 27 | 443 |
| Սևերնայա ռոզա | Հունիս | Սեպտեմբեր | 552 |
| Լորխ | Հունիս | Սեպտեմբեր | 492 |
| Միջին բերքը | — | — | 492 |

*Երկու ժամկետում տնկված կարտոֆիլի բերքը, հեկտարի հաշվով, կազմեց 804 ցենտներ։*

*Այն, ինչ ես անում եմ իմ հողամասում, կարելի է հաջողությամբ հանձնարարել բոլոր սիրող կարտոֆիլաբույծներին։*

---

ՊԱՏԱՍԽԱՆ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ ՀԱՐՑԵՐԻՆ

# ԻՆՉ ԲԱՆ Է «ԸՆԴՀԱՆՈՒՐ ՇՈՒԿԱՆ» ԵՎ ԵՎՐԱՏՈՄԸ

Երևանի էլեկտրալամպերի գործարանի նախապատրաստական ցեխի վարպետ, ագիտատոր Ա. Թոխմաչյանը դիմել է խմբագրությանը հետևյալ հարցով՝ ի՞նչ բան է «Ընդհանուր շուկան» և Եվրատոմը: Պատասխանում ենք այդ հարցին:

*1957 թվականի մարտի 25-ին, Հռոմում վեց պետությունների՝ Ֆրանսիայի, Գերմանիայի Ֆեդերատիվ Ռեսպուբլիկայի, Իտալիայի, Բելգիայի, Հոլանդիայի և Լյուքսեմբուրգի ներկայացուցիչները ստորագրեցին «Պայմանագիր Եվրոպական տնտեսական ընկերության հիմնադրման մասին» (որը նախատեսնում է ստեղծել «ընդհանուր շուկա» և կնքել պայմանագիր ատոմային էներգիայի եվրոպական ընկերության հիմնադրման մասին», «Եվրատոմ»։ Ենթադրվում է այդ պայմանագրերը վավերացնել մինչև 1957 թ. վերջը, իսկ 1958 թվականի հունվարի 1-ից նրանց ուժի մեջ մտցնել։*

«Ընդհանուր շուկայի» ստեղծման նախագիծը ի նկատի ունի լիկվիդացնել Արևմտյան Եվրոպայի վերոհիշյալ վեց երկրների միջև մաքսային սահմանները։ Ըստ այդ պլանի՝ դա պետք է հնարավորություն տա Եվրոպայում կազմակերպելու էժան ապրանքների մասսայական արտադրություն, որը ձեռնտու կլինի բոլոր երկրներին։ Պայմանագրի ներածական մասում ճոխ կերպով հռչակվում է մասնակից պետությունների ձգտումը ապահովել «իրենց ժողովուրդների տնտեսական և սոցիալական պրոգրեսը», ամրապնդել «խաղաղության և ազատության երաշխիքները», ՄԱԿ-ի Կանոնադրության սկզբունքներին համապատասխան ապահովել այդ երկրների «բարգավաճումը»։ Սակայն իրականությունը միանգամայն հերքում է այդ մեծախոսստում հայտարարությունները։

Ֆրանսիան, Արևմտյան Գերմանիան, Իտալիան, Բելգիան, Հոլանդիան և Լյուքսեմբուրգը մաքսային սահմանափակումները մտադիր են լիկվիդացնել միմյանց միջև առևտրի հարցում հետզհետե, տասնհինգ տարվա ընթացքում։ Սակայն ամեն մի քիչ թե շատ գրագետ մարդու համար հասկանալի է, որ ազատ առևտրի պայմաննե-



րում, երբ սեփական արդյունաբերության արտադրանքը չի պաշտպանվում մաքսատուրքերով, հաղթող դուրս է գալիս այն երկիրը, որը ի վիճակի է վաճառել իր ապրանքները համեմատաբար էժան գներով։ Անկասկած, այդպիսի հնարավորություն «ընդհանուր շուկայում» կունենա տեխնիկապես ամենազարգացած և տնտեսապես ամենահզոր մասնակիցը՝ Արևմտյան Գերմանիան։

Կապիտալիստական աշխարհի արդյունաբերական արտադրության մեջ ԳՖՌ-ի բաժինը կազմում է 9,5 տոկոս, այն ժամանակ, երբ «ընդհանուր շուկայի» մյուս հինգ մասնակիցների բաժինը միասին հավասար է ընդամենը 10 տոկոսի։ Վեց երկրների խմբում Արևմտյան Գերմանիայի տեսակարար կշիռը ըստ արտադրանքի առանձին կարևոր տեսակների թողարկման կազմում է. չուգուն— 47 տոկոս, ածուխ— 60 տոկոս, պողպատ— 47 տոկոս (ներկայումս ԳՖՌ-ում տարեկան մոտ 26,5 միլիոն տոննա պողպատ է արտադրվում, այսինքն 2 անգամ ավելի, քան Ֆրանսիայում), ավտոմոբիլներ— 48 տոկոս, ալյումին— 51 տոկոս։ Նրա մետալուրգիական արդյունաբերությունը հագեցված է ժամանակակից նո-

ըագույն սարքավորումներով, հենվում է սեփական ածխային բազայի վրա, ապահովված է ավելի էժան բանվորական ուժով։ Արդեն հիմա, այսինքն մինչև մաքսային արգելագծերի լիկվիդացումը, Ռուրի մագնատները դուրս են մղում իրենց մրցակիցներին արևմտաեվրոպական շուկաներից։ Դժվար չէ պատկերացնել, որ մաքսային արգելքների ոչնչացումից հետո արևմտագերմանական համեմատաբար էժան և բարձրորակ արտադրանքը առանց մեծ դժվարության դուրս կմղի Ֆրանսիայի, Բելգիայի, Իտալիայի և Արևմտյան Եվրոպայի մյուս երկրների ապրանքները։

Զարմանալի չէ, որ Ռուր-Հռենոսյան մոնոպոլիաները արդեն հայտարարում են, որ գերմանական մարկը պետք է վճարման գլխավոր միջոց դառնա «ընդհանուր շուկայում»։

Հարկավոր է նշել և այն, որ Ֆրանսիան հետ է մնում ԳՖՀ-ից նաև հիմնական կապիտալի վերականգնման տեմպերով, արտադրանքի ինքնարժեքի բարձր մակարդակով։ Բացի այդ Ֆրանսիան գաղութային պատերազմների համար պետական անարտադրողական վիթխարի ծախսեր է կատարում։ Ներկայումս կեղտոտ պատերազմը



Ալժիրում խժռում է օրական մոտ երկու միլիարդ ֆրանկ։

Ֆրանսիային սպասում է երկրորդական մասնակցի դերը «ընդհանուր շուկայում», որին կգլխավորի միլիտարիստական Արևմտյան Գերմանիան։ Ֆրանսիայի և նրա գաղութների բնական ռեսուրսները, ըստ պայմանագրի, անցնում են օտարերկրյա մոնոպոլիաների վերահսկողության տակ։ «Ընդհանուր շուկան» սպառնում է ֆրանսիական մանր և միջին գյուղացիությանը, մանր ու միջին ձեռնարկատերերին, զրկելով նրանց ուժեղ օտարերկրյա մրցակիցների դեմ պաշտպանությունից։ Չի կարելի մոռանալ և այն, որ «ընդհանուր շուկան» Ֆրանսիայի աշխատավորության համար մեծագույն վտանգ է հանդիսանում, որովհետև հարցականի տակ է դնում նրա սոցիալական նվաճումները։ «Ընդհանուր շուկան» շատ թանկ կնստի ֆրանսիական բանվորներին։ Չէ՞ որ հենց նրանց հաշվին, նրանց աշխատավարձի կրճատման հաշվին ֆրանսիական կապիտալիստները ձգտում են էժանացնել իրենց արտադրանքը, նրան մրցակցելու ունակություն տալու նպատակով։

«Ընդհանուր շուկայի», Եվրոպայի էկոնոմիկական և էներգետիկ ռեսուրսների միաց-

ման քողի տակ իրականում մշակվում են պլաններ, որոնք ուղղված են Եվրոպայի պառակտմանը, տնտեսական և ռազմական բլոկների։ Մշակվում են պլաններ ոչ միայն տնտեսական, այլև քաղաքական տեսակետից Ֆրանսիայի, ԳՖՌ-ի, Իտալիայի, Բելգիայի, Հոլանդիայի և Լյուքսեմբուրգի միացման մասին, որտեղ ղեկավար դեր, անշուշտ, կխաղան գերմանական և նրանց մեջքում կանգնած ամերիկյան մոնոպոլիաները։ Հենց դրանումն է կայանում Ֆրանսիայի համար խոշորագույն սպառնալիքը, որը հարվածի տակ է դնում նրա ոչ միայն տնտեսական, այլև քաղաքական ինքնուրույնությունը։

Հայտնի է, որ Եվրատոմի մեջ մտնող երկրներից միայն Ֆրանսիան և Բելգիան ունեն ատոմային հումքի աղբյուրներ։ Ինչ վերաբերում է Բելգիային, ապա նա վաղուց արդեն կապված է Վաշինգտոնի հետ պայմանագրով, որի համաձայն ԱՄՆ-ին է տալիս Բելգիական Կոնգոյում արդյունահանվող ամբողջ ուրանը։ Այսպիսով, միայն Ֆրանսիան պետք է մատակարարի ատոմային հումքով իր պարտնյորներին։ Եվրատոմի մասին պայմանագրի նախագիծը ի նկատի ունի, որ ֆրանսիական ամբողջ ուրանը կու-



ղարկվի ԱՄՆ, որը դրա փոխարեն Եվրատոմի երկրների համար բաժին կհանի որոշ քանակությամբ փոքր ինչ հարստացված ատոմային հումք։ Այդպիսով, Ֆրանսիան ընկնում է կախման մեջ ամերիկյան մոնոպոլիաներից, որոնք ըստ իրենց քմահաճույքի կօգտագործեն ֆրանսիական ուրանը և փաստորեն կարգելեն նրան զարգացնել ատոմային էներգիայի սեփական արտադրությունը։

Եվրատոմի մասնակից երկրներից ատոմային արդյունաբերության զարգացման մակարդակով ներկայումս առաջին տեղն է գրավում Ֆրանսիան։ Նրա տերիտորիայում գտնվող ուրանի պաշարները, ըստ վերջին գնահատումների, կազմում են 50-ից մինչև 100 հազար տոննա։ Ատոմային էներգիայի օգտագործման պրոբլեմների վրա աշխատող մասնագետների թիվը Ֆրանսիայում երեք անգամ գերազանցում է Եվրատոմի մյուս հինգ երկրների (միասին վերցրած) ընդհանուր թվին։ Բայց հաշվի առնելով այն, որ Ֆրանսիան արդյունաբերության, մանավանդ նրա այնպիսի կարևոր ճյուղերի զարգացման մեջ, ինչպիսիք են ատոմային էներգիայի արտադրության ծավալման համար կարևորագույն նշանակություն ունեցող ճյուղերը՝ մե-

քենաշինությունը և քիմիան՝ հետ է մնում Արևմտյան Գերմանիայից, միանգամայն օրինական կլինի ենթադրել, որ Եվրատոմի ստեղծման պլանը նույնպես ձեռնտու է Ռուրի մոնոպոլիաներին։

Ամերիկյան իմպերիալիստները չափազանց շահագրգռված են Եվրատոմի ստեղծմամբ, որովհետև դա ուժեղացնում է նրա մասնակիցների կախումը ԱՄՆ-ից։ Պատահական չէ, որ ներկայումս պետական դեպարտամենտը հիշյալ պայմանագրերի վավերացման գործում ավելի մեծ ակտիվություն և շահագրգռվածություն է ցուցաբերում, քան Եվրատոմի անմիջական մասնակից երկրները։ Հետաքրքիր է նշել, որ այս բոլորը առաջ է բերում Անգլիայի ղեկավար շրջանների մեծ անհանգստությունը, որոնք կտրականապես հրաժարվեցին Եվրատոմի մասնակից դառնալուց։

Ամերիկյան իմպերիալիստները ձգտում են արագացնել «ընդհանուր շուկայի» և Եվրատոմի մասին պայմանագրերի վավերացումը նրա մասնակիցների կողմից, որպեսզի վերջիններս ընկնեն ավելի ուժեղ կախման մեջ ԱՄՆ-ից։ Եվրատոմի բոլոր մասնակիցները, ինչպես հայտնի է, մտնում են Արևմտաեվրոպական դաշինքի մեջ, որը Հյուսիս-Ատ-



լանտյան ագրեսիվ բլոկի (ՆԱՏՕ) հիմքն է հանդիսանում։ Դրանով ԱՄՆ-ը ձգտում է կայուն դարձնել «Վաշինգտոն—Բոնն» առանցքը, ամրապնդել Ռուրի մագնատների, այդ իրենց գլխավոր պարտնյորների տնտեսական և ռազմական գերիշխանությունը, ապահովել արևմտագերմանական միլիտարիստական ուժերի տիրապետությունը ամբողջ Եվրոպայի վրա։

«Ընդհանուր շուկան» և Եվրատոմը սերտորեն կապված են իմպերիալիստական տերությունների ագրեսիվ պլանների հետ։ Այդ կազմակերպությունների ռազմա-ստրատեգիական ուղղությունը երևում է նախ և առաջ այն բանից, որ նրանք պետք է գործեն ՆԱՏՕ-ի և Արևմտաեվրոպական դաշինքի շրջանակներում։ «Ընդհանուր շուկան» այդ ռազմա-քաղաքական խմբավորումների տնտեսական հիմքը պետք է հանդիսանա։ Այդ շուկային միացնելով իրենց գաղութները, նրա մասնակիցները մտադիր են օգտագործել ստրատեգիական հումքի աֆրիկական աղբյուրները և կառուցել Աֆրիկայում խոշոր ռազմա-արդյունաբերական կոմպլեքս (Եվրաֆրիկա)։ «Ընդհանուր շուկան» նախատեսում է նաև նրա մասնակիցների սպառազինությունների ստանդարտիզացիան։

Եվրատոմի գլխավոր նպատակն է՝ զարգացնել ռազմական ատոմային արդյունաբերությունը: Հատուկ նշանակություն ունի այն փաստը, որ Եվրատոմը գերմանական միլիտարիստներին հնարավորություն կտա արտադրել ատոմային զենք և լայնորեն ծավալել ատոմային պատերազմի պատրաստությունը Եվրոպայում:

Ատոմային էներգիայի խաղաղ օգտագործմանը ուղղված միջազգային համագործակցությունը հատուկ նշանակություն ունի: Այդ պատճառով Սովետական Միությունը միշտ էլ հանդես է եկել եվրոպական երկրների տնտեսական համագործակցության պրոբլեմի իսկական լուծման օգտին: Այդ հարցերի լուծումը լրջորեն կնպաստեր հակադիր ռազմական խմբավորումների լիկվիդացիային Եվրոպայում, խաղաղության գործի ամրապնդմանը երկրագնդի այդ կարևոր շրջանում: Սակայն ոչ «ընդհանուր շուկան» ոչ էլ Եվրատոմը ոչ մի առնչություն չունեն այդ նպատակների հետ, դեռ ավելին, նրանք ուղղված են խաղաղության և անվտանգության դեմ:

Սովետական կառավարությունը դեռևս 1956 թվականի ապրիլին, Եվրոպական տնտեսական հանձնաժողովի 11-րդ սեսիայում



առաջարկեց ստեղծել ատոմային էներգիայի օգտագործման հարցերի հատուկ օրգան բոլոր եվրոպական երկրների համար: 1956 թվականի հուլիսի 12-ին Սովետական կառավարությունը առաջարկեց հրավիրել Եվրոպայի երկրների կոնֆերանս ատոմային էներգիայի համաեվրոպական օրգանի ստեղծման հարցը քննարկելու համար: Այդ առաջարկությունները զարգացվեցին Սովետական կառավարության 1957 թվականի մարտի 16-ի հայտարարության մեջ: Ցավոք սրտի, արևմտյան երկրների կառավարությունները մերժեցին այդ առաջարկությունները, այն «պրոպագանդիստական մանյովր» անվանելով:

Այսպիսով, Հռոմում ստորագրված համաձայնագրերը «ընդհանուր շուկայի» և Եվրատոմի մասին ուղղված են ագրեսիվ բլոկների ռազմա-արդյունաբերական բազայի ամրապնդմանը, ատոմային սպառազինությունների մրցավազքի ուժեղացմանը, Եվրոպայում ատոմային պատերազմի նախապատրաստմանը: Հենց այդ պատճառով հիշյալ պայմանագրերի վավերացումը իրենից սպառնալիք է ներկայացնում ոչ միայն նրա մասնակիցների ազգային շահերին, այլև



Եվրոպայի բոլոր խաղաղասեր երկրների համար։

Եվրոպայի ժողովուրդներին պետք է ոչ վեց երկրների «ընդհանուր շուկա», որը ռազմաստրատեգիական նպատակների է ծառայում, և ոչ էլ Եվրատոմ, որն ատոմային պատերազմի հեռանկարներ ունի, այլ Եվրոպական բոլոր երկրների տնտեսական համագործակցություն, միջազգային լայն համագործակցություն, որն ուղղված կլինի ատոմային էներգիայի խաղաղ օգտագործմանը և ջերմամիջուկային զենքի արգելմանը։

Համախմբվելով խաղաղության և ազատության դրոշի տակ, ժողովուրդները հողմացրիվ կանեն իմպերիալիստների ագրեսիվ մտադրությունները և կապահովեն բոլոր վիճելի հարցերի հաշտ լուծումը։

Ս. ՊԱՊՅԱՆ

---

## СОДЕРЖАНИЕ



---

Խմբագիր՝ Վ. ԲԶՆՈՒՆԻ

Отдел пропаганды и агитации
ЦК КП Армении
**БЛОКНОТ АГИТАТОРА**

№ 17 1957 г.

ՎՖ 08451 Պատվեր 650 Տիրաժ 8550

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Հրատարակչու-
թյունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր
վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։
Գինը 50 կոպ.։